Տիրացյան, Գ. Ա. (1985) Հայերի ոչ հնդեվրոպական նախնիները՝ խուրրի ուրարտացիները և Ուրարտու-Հայաստան պրոբլեմը. Պատմա-բանասիրական հանդես, № 1 . pp. 195-207. ISSN 0135-0536

## Բ Ա Ն Ա Վ Ե Ճ   Д И С К У С С И И

# ՀԱՅԵՐԻ ՈՉ ՀՆԴԵՎՐՈՊԱԿԱՆ ՆԱԽՆԻՆԵՐԸ՝ ԽՈՒՐՐԻ ՈՒՐԱՐՏԱՑԻՆԵՐԸ ԵՎ ՈՒՐԱՐՏՈՒ—ՀԱՅԱՍՏԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Գ. Ա. ՏԻՐԱՑՅԱՆ

*Վերջին ժամանակներում նոր թափով արտահայտված կասկածներից անկախ կարելի է ապացուցված համարել, որ Հայկական լեռնաշխարհը վաղուց բնակեցնող խուրրի ուրարտացիները հայերի նախնիներն են և կազմել են հայ ժողովրդի հիմքը։*

*Այդ երևում է Հայկական լեռնաշխարհի բնակչության էթնիկական կազմի հինարևելյան (ուրարտական, աքքադական, խեթական, խուրրիական) արձանագրությունների օգնությամբ բացահայտվող պատկերից, որի համաձայն այդ լեռնաշխարհի ըզալի տարածությունները բնակեցված էին իրար ազգակից խուրրի-ուրարտական ցեղերով։ Խուռրիական տարրը վկայված է Հայկական լեռնաշխարհի արևմտյան մասերում (որտեղ նա համագոյակցում էր հնդեվրոպացի հայ-արմենների հետ), Վանա լճից հարավ, Արևելյան Տիգրիսի հովտում (Խուբուշկիա), Ուրմիո լճի շրջապատում և հյուսիսում՝ Դիաուխի երկրում, ապագա Տայքում։ Ուրարտացիները վկայված են Վանա լճից հյուսիս, արևելք և հարավ, առավելապես հարավ-արևելք մինչև Մուսասիր (Ռևանդուզի շրջան), ինչպես նաև հյուսիս-արևելքում՝ Արարատյան դաշտում[1]։*

*Ուրարտուի անվան դեմ ձեռնարկած ոտնձգությունններն ունեն կրկնակի նպատակ՝ ոչ միայն ապացուցել այդ անվան սնանկությունը, այլ նաև ժխտել նրա տակ հասկացվող երկրի կամ պետության գոյության փաստը։ Պետք է նշել, որ արհեստականորեն այն տպավորությունն է ստեղծվում, թե Ուրարտուն մի նորաթուխ տերմին է, արդյունք մեր ժամանակների, ամեն դեպքում՝ XIX—XX դդ. գիտնականների եթե ոչ միտումների, ապա գոնե նրանց մտորումների։*

*Այնինչ քաջ հայտնի է, որ Ուրարտու անունը, Ուրուատրի, Ուրատրի և հենց Ուրարտու ձևերով ծանոթ էր մեր օրերից համապատասխանաբար 3300, 3000 և 2800 տարի առաջ։ Առաջին անգամ Ուրուատրի ձևով հանդիպելով Ասորեստանի Սալմանասար I (մ. թ. ա. 1280—1261) և ապա Աշշուրբելկա (մ. թ. ա. 1076—1050) թագավորների արձանագրություններում, անունը շարունակում է հիշատակվել Ուրատրի ձևով նույն Ասորեստանի Ադադներարի II (մ. թ. ա. 911—890) թագավորի արձանագրություններում և ապա Ուրարտու ձևով՝ Աշշուրնազիրպալ II (մ. թ. ա. 883—859) և Սալմանասար III (մ. թ. ա. 860—825) թագավորներից սկսած մինչև Ասորեստանի վերջին թագավորների ժամանակաշրջանը[2]։ Ուրարտու անունը, ճիշտ է, նույն ասորեստանյան աղբյուրների միջնորդությամբ, հանդիպում է և այլալեզու աղբյուրներում. բաբելական արձանագրություններում՝ Ուրաշտու, Հին կտակարանում՝ Արարատ կամ Էրիրաթ, Մեռյալ ծովի Քումրանի համայնքի տեքստերում՝ Ուրարատ ձևերով։ Հիշատակվում է ուրարտացիների՝ ալարոդների անունը նաև մ. թ. ա. V դարի հույն պատմիչ Հերոդոտոսի մոտ։*

---

[1] Г. А. Меликишвили. Наири—Урарту. Тбилиси, 1954, с. 70 и сл; его же. Урартские клинообразные надписи. М., 1960, с. 8—12.

[2] Б. Б. Пиотровский. Ванское царство. М., 1959, с. 43 и сл.

Պակաս կարևոր չէ այն հանգամանքը, որ աղբյուրները նույն տերմինի օգնությամբ բնորոշում, բայց և տարբերակում են ցեղային միությունը (Ուրուատրի, Ուրատրի) երկրից և թագավորությունից (Ուրարտու, Ուրաշտու, Արարատ, Ուրարատ), սրանք էլ՝ էթնիկական պատկանելությունից (Արամու ուրարտացին՝ Արրամու ուրարտայա) կամ էթնիկական խմբից (ուրարտացիներ՝ ուրաշտայա, ալարոդներ)։

Ինքնին հասկանալի է, որ առաջին հերթին ասորեստանյան, ինչպես և մյուս աղբյուրներում հիշատակվող անունների հնությունը և վավերականությունը, որոնց գերակշռող մասը ժամանակակից է իրենց օբյեկտին, այդ անուններին հաղորդում է պատմական և օրինական բնույթ, անկախ այն հանգամանքից, թե ուրարտացիները իրենց և իրենց երկիրը ինչպես էին անվանում, որովհետև մեր օրերում էլ բազմաթիվ օրինակներ ունենք երկրների և ժողովուրդների, որոնց այլ ժողովուրդների կողմից տրված և ինքնանունից տարբերվող անվանումները վաղուց քաղաքացիության իրավունք են ստացել։ Ամենևին, ուրեմն, պատահական չէ և ոչ էլ քմահաճույքի արդյունք, որ ժամանակակից գիտությունը որդեգրեց ասորեստանցիների հիշատակած Ուրարտու անունը ոչ միայն Ուրարտուի ժառանգների երկրում՝ Հայաստանում, այլև Ռուսաստանում, Արևմտյան Եվրոպայում, ԱՄՆ-ում և, ինչպես երևում է Տոկիոյում վերջերս հրատարակված ուրարտագիտական բիբլիոգրաֆիայից, անգամ Ճապոնիայում. մի խոսքով բոլոր այն տեղերում, որտեղ զբաղվում են Հին Արևելքի պատմությամբ ու մշակույթով։

Ուրարտու անունը վաղուց է ստացել քաղաքացիության իրավունք ժամանակակից գիտության մեջ և հանդիպում է տասնյակ և հարյուրավոր գրքերում ու հոդվածներում, թանգարանների ցուցադրություններում ու կատալոգներում։ Բացի դրանից հայտնի է, որ Ուրարտու անունը հաստատուն հետքեր է թողել Հայկական լեռնաշխարհում Արարատ լեռան, Այրարատ նահանգի, Օրտայացիների ցեղի (Անձիտի շրջանում) և Ալ-Արտան (Խութ-Սասունում) անունների մեջ[3]։ Այս նշանակում է, որ Ուրարտու անունից հրաժարվելու դեպքում մենք պետք է հրաժարվենք հայկական տեղագրության ու ցեղագրության մեջ հաստատուն տեղ գրաված վերոհիշյալ անուններից, մի հանգամանք, որն աներևակայելի է։ Սա ամենևին չի նշանակում, թե ընդունելի չեն նաև երկրի, տերության մյուս անունները՝ նախ և առաջ Բիայնա, Բիայնիլի ինքնանվանումը կամ Վանի թագավորություն ձևը։

Սակայն կարևորը այս իրադրության մեջ մի այլ իրողություն է, որը դժուշորեն շրջանցվում է։

Ասել, որ Ուրարտու անունը ասորեստանցիներն են տվել երկրին՝ նշանակում է միայն ճշմարտության կեսն ասել։ Բանն այն է, որ այս անունը ասորեստանցիները ոչ թե հորինել են իրենց լեզվով, այլ Ուրարտու անվանը նրանք հանդիպել են հենց Հայկական լեռնաշխարհում։ Սա խիստ կարևոր հանգամանք է։ Ինչպես դեռ իր ժամանակին նկատել է Ն. Ադոնցը, Ուրարտու անունը իր բոլոր տարբերակներով ոչ մի կապ չունի սեմական, ասորեստանյան լեզուների հետ և չի ստուգաբանվում այդ լեզուների օգնությամբ։ Ընդհանրապես Ուրարտու անունը ունի միանգամայն տեղական արմատներ[4]։ Այդ, իմիջիայլոց, բխում է նաև ասորեստանյան արձանագրությունների բնույթից։ Մուտք գործելով Հայկական լեռնաշխարհ, Ասորեստանի թագավորները իրենց արձանագրություններում թվարկում էին նվաճված երկրների ու բնակավայրերի,

[3] J. Markwart. Südarmenien und die Tigrisquellen. Wien, 1930, S. 221—223; Գր. Ղափանցյան. Ուրարտուի պատմություն. Երևան, 1940, էջ 134, 226։

[4] Գր. Ղափանցյան. Նշվ. աշխ., էջ 12—13, 132—133։ Г. А. Меликишвили. Наири—Урарту, с. 20—22. Ն. Ադոնց. Հայաստանի պատմություն. Երևան, 1972, էջ 269։

ցեղերի ու ցեղային միությունների՝ տեղում լսած անունները, այդ թվում և Ուրուատրին, Ուրատրին և Ուրարտուն։ Ինչպես երևում է նույն այդ արձանագրությունների տվյալներից, վերոհիշյալ անունները կրող երկիրը կամ ցեղային միությունը սկզբնապես փոքր է եղել, տեղադրված Վանա լճից հարավարևելք, Մեծ Զաբ գետի շրջանում։ Այստեղից անունը տարածվել է դեպի հյուսիս՝ ընդգրկելով իր մեջ Վանա լճի ավազանը, ապա Հայկական լեռնաշխարհի մի մեծ մասը[5]։

Որ Ուրարտու անունը տեղական ծագում ունի դա երևում է մի շարք փաստերից։ Այսպես, ուրարտական արձանագրություններում հանդիպում է ուրուրդի տերմինը՝ մարդկանց որոշ կատեգորիա բնորոշելու համար։ Հնարավոր է, որ ասորեստանցիները սկզբում հանդիպել են սոցիալական այս խմբին, որի ուրուրդի անունը աստիճանաբար վերածվել է Ուրարտուի, տարածվելով սկզբում ուրարտական ցեղերի, ապա Ուրարտական պետության վրա։ Մեզ ավելի հնարավոր է թվում այն բացատրությունը, ըստ որի Ուրարտու անունը ծագում է Խաբխի երկրում, Կորճայքի (Իրաքյան Քրդստանի) լեռներում Ասորեստանի Աշուրնազիրպալ II թագավորի (883—859) արձանագրության մեջ հիշատակվող Արարդի լեռան (այժմ՝ Ջուդդի դաղ) անունից[6]։ Արարդին կարող է Արարդու ուղղական ձևից ծագել։ Ավելի քան հավանական է, որ Արարադի երկիրը, ուր, ըստ Մովսես Խորենացու, ժամանակավորապես հանգրվանում է Հայկը Բաբելոնից հեռանալուց հետո, հենց այս լեռան շրջապատն է կազմում։ Հավանաբար նախնական Ուրարտուն ձևավորվել է այս շրջանում, Մուսասիրի հռչակավոր կենտրոնից ոչ շատ հեռու և ապա տարածվել հյուսիսային ուղղությամբ։

Այժմ քննենք Ուրարտուի էթնիկական պատկանելության հարցը։

Ուրարտուի, նրա բնակչության էթնիկական պատկանելության չափանիշը այնուամենայնիվ մնում է լեզուն։ Այստեղից էլ ուրարտական սեպագիր արձանագրությունները հայերեն կարդալու՝ կատարյալ անհաջող (բարեբախտաբար սակավաթիվ) փորձերը։ Մորդմանի (XIX դար) անհաջողության մատնված օրինակը, ինչպես նաև արձանագրությունները վրացերեն կարդալու նույն ճակատագրին արժանացած փորձերը (Լենորման, մասամբ Ն. Մառ) վկայում են, որ արձանագրությունները կարելի է կարդալ միայն այն լեզվով, որով նրանք գրված են, այսինքն՝ ուրարտերեն։

Չնայած ուրարտերենից հայերենի և, հավանաբար, հայերենից ուրարտերենի մեջ որոշ թվով փոխառյալ բառերի գոյությանը, երկու լեզուների քերականական կառուցվածքի, բառապաշարի և լեզվային այլ հատկանիշների համեմատումը ակնհայտորեն մատնանշում է նրանց ոչ միայն տարբեր լեզուներ լինելը, այլև տարբեր լեզվաընտանիքների պատկանելը։ Բավական է հիշատակել էրգատիվի քերականական ձևի գոյությունը ուրարտերենում, որն իսպառ բացակայում է հնդեվրոպական լեզուներում և հայերենում։ Այս կապակցությամբ պետք է նշել, որ իր հաստատումը չգտավ նաև ուրարտերենը հնդեվրոպական կամ հնդեվրոպաձև լեզու և կամ հնդեվրոպական լեզուներին ազգակից լինելու մասին տեսակետը[7]։ Դրա փոխարեն նորանոր փաստեր են բերվում խուրրիերենի հետ ուրարտերենի ունեցած ազգակցական մերձավորության մասին, որով Առաջավոր Ասիայի հնագույն լեզվախմբերից խուրրի-ուրարտական առանձին և ինքնուրույն լեզվախումբը երրորդ տեղն է գրավում հնդեվրոպականից ու սեմականից հետո[8]։

Եթե փաստերի ծանրության տակ ընդունվում է, որ ուրարտական արձանագրությունների լեզուն այնուամենայնիվ հայերեն չէ (երկու լեզուների միջև

---

5 Б. Б. Пиотровский. Указ. соч., с. 43 и сл.

6 Գ. Ղափանցյան. Նշվ. աշխ., էջ 22, 132—133։ Г. А. Меликишвили. Наири—Урарту, с. 21.

7 Г. Б. Джаукян. Урартский и индоевропейские языки. Ереван, 1963.

8 И. М. Дьяконов. Языки древней Передней Азии. М., 1967, с. 113 и сл.

դություն ունեցող արմատական տարբերությունները միանգամայն ակնհայտ են), ապա կայծակնային արագությամբ հարմարվելով ստեղծված իրադրությանը առաջ է քաշվում մի նոր տեսակետ, որի էությունը հետևյալն է։ Ուրարտուն այնուամենայնիվ Հայաստան է, հայկական բնակչությամբ, իսկ նրա տարածքում գտնվող ուրարտական սեպագիր արձանագրությունները գրված են այդ բնակչությանը անհասկանալի մի լեզվով, որը պետական-պաշտոնական լեզվի դեր է կատարել։ Ռ. Ա. Իշխանյանի կողմից առաջ քաշված այս տեսակետի շարադրման շարունակության մեջ ասվում է, որ մ. թ. ա. IX—VII դդ. այդ հայկական թագավորության բնակիչները, որոնք հայեր էին, չունենալով իրենց գիրը, օգտվել են նորխուրրիերեն լեզվից (որով իբր գրված են այդ թագավորության արձանագրությունները) և միջագետքյան սեպագրերից, այնպես, ինչպես ավելի ուշ օգտվել են արամերենից ու հունարենից[9]։

Բայց ամեն ինչից երևում է, որ արձանագրությունների լեզուն, ինչպես էլ այն անվանելու լինենք, նորխուրրիերեն, ուրարտերեն կամ այլ կերպ, այդ երկրի բնակիչների լեզուն է, կենդանի և խոսակցական։ Այնպես որ արձանագրությունների լեզվի նորխուրրիական վարկածը, լեզու, որ իբր սեփական գիրը չունեցող պետության կողմից որպես պաշտոնական լեզու պարտադրվել է իր հայ բնակչությանը, մերժելի է դառնում։

Ընդհակառակը, ակնհայտ է, որ արձանագրությունների լեզուն ուրարտերենն է, հարազատ ոչ միայն ուրարտական պետության վերնախավի, այլ նաև այդ պետության ուրարտական ծագում ունեցող բնակչության համար և որ այն խոսակցական լեզու է եղել։ Մասնագետները հաստատել են ուրարտերենի երկու բարբառների (Վանի և Մուսասիրի[10], որոնց գուցե հնարավոր լինի ավելացնել և երրորդը՝ Արարատյան դաշտի բարբառը) գոյության փաստը, բարբառներ, որոնք բնականաբար ժամանակակից են ուրարտական թագավորությանը և նրա արձանագրություններին։ Այս հնգամանքը անշուշտ վկայում է կենդանի լեզվի գոյության և նրա օգտագործման հնարավորության մասին։

Նույն բանի մասին են վկայում նաև կավե տախտակների վրա դրոշմված սեպագիր նամակ-արձանագրությունները։ Նրանցում արծարծված հարցերը շատ դեպքում հասարակ են, իսկ նրանց բնույթը այնքան կենցաղային ու ամենօրյա (տեղեկություն հացթուխի կամ խոհարարի՝ պալատում աշխատող դստերը ամուսնացնելու մասին, Տատա ստրուկի կողմից մի աղջկա առևանգման կապակցությամբ հրաման ավագ հովվին՝ այդ աղջկան գտնելու և տիրոջը վերադարձնելու մասին և այլն)[11], որ հնարավոր չէ պատկերացնել, թե նամակների լեզուն ժողովրդի լեզուն չէ, այլ պետության կողմից արհեստականորեն պատվաստված ինչ-որ մի անհասկանալի լեզու։ Ուրարտական արձանագրությունների համեմատաբար մեծ թիվը, նրանց տեղաբաշխումը ամբողջ տերությամբ մեկ, նրանց բազմաբնույթ բովանդակությունը (ռազմական, նվաճողական, շինարարական, պաշտամունքային), էլ չենք խոսում արձանագրությունների եզրափակիչ հատվածի՝ նրանց պոտենցիալ եղծողներին, ավերողներին, վնասողներին ու փչացնողներին ուղղված նախազգուշացումների ու անեծքների մասին, անկասկած վկայում են, որ այդ արձանագրությունները հասցեագրված էին կոնկրետ ընթերցողին, մանավանդ որ, ինչպես գնալով ավելի պարզ է դառնում, գրագիտությունը բավականին տարածված է եղել Հին Արևելքում[12], այդ թվում պետք է կարծել նաև Ուրարտուում։

Վերջապես հայտնի է, որ Ուրարտուում առաջին արձանագրությունները եղել են ասուրերեն, իսկ հետո փոխարինվել են ուրարտական արձանագրու-

9 Ռ. Իշխանյան. Համեմատական լեզվաբանության նոր հայտնագործումները և հայերի ծագման ու հնագույն պատմության հարցերը.—«Բանբեր Երևանի համալսարանի», 1979, № 2։

10 Գր. Ղափանցյան. Նշվ. աշխ., էջ 96։ Г. А. Меликишвили. Урартские клинообразные надписи, с. 32, 82 и сл.

11 И. М. Дьяконов. Урартские письма и документы. М.—Л., 1963, с. 33—34.

12 М. А. Дандамаев. Вавилонские писцы. М., 1983.

թյուններով, որոնց և՛ լեզուն, և՛ անգամ նույն սեպագրի վրա հենված գրությունը տարբեր է նախորդից։ Եթե այդ ուրարտերենը կամ նորխուրրիերենը նույնպես անհասկանալի էր ժողովրդին, ապա էլ ի՞նչ կարիք կար հրաժարվելու նույնքան անհասկանալի ասսուրերենից, որը նույն հաջողությամբ կարող էր տեղական պաշտոնական լեզվի դեր խաղալ։ Սակայն ասսուրական արձանագրություններին փոխարինող լեզուն ոչ միայն պետական լեզուն էր, այլ նաև պետության կազմի մեջ մտնող էթնիկական որոշակի զանգվածների լեզուն, նրանց հասկանալի և օգտագործելի։

Այսպիսով տեսնում ենք, որ արձանագրությունների լեզուն ուրարտերենն էր, այն հասկանալի է եղել ժողովրդին և սպասարկել է նրան։ Այդ կապակցությամբ պետք է նշել նաև, որ հաջող չէ Հայաստանում ավելի ուշ կիրառություն գտած հունարենի ու արամերենի օրինակը, ապացուցելու համար, թե սեպագիր արձանագրությունների լեզուն տարբեր է եղել ժողովրդի լեզվից։ Համեմատական պատմական զուգահեռների (անալոգիաների) մեթոդը պահանջում է մեծ զգուշավորություն և բանիմացություն։ Ուրարտական արձանագրությունների օտարամուտ բնույթը հաստատելու համար հունարենի և արամերենի օրինակը տեղին չէ։ Հունարենը և արամերենը ունեցել են միջազգային աննախադեպ տարածում, որը չի կարելի ասել ուրարտական արձանագրությունների լեզվի մասին, ինչպես էլ մենք այն անվանելու լինենք։ Մենք ոչ մի օրինակ չունենք, թե այդ լեզվով օգտվել են ուրիշ ժողովուրդներ կամ պետություններ, ուստի և այդ արձանագրությունները հանդիպում են միայն Ուրարտական պետության սահմաններում։ Եթե նրանք հանդիպում են նրա սահմաններից դուրս (օրինակ Հյուսիսային Իրանի տարածքում), ապա անմիջականորեն կապվում են ուրարտական թագավորների ռազմական նվաճողական քաղաքականության հետ։ Այնինչ արամերենը, որը արդեն Նորասորեստանյան պետությունում կայուն դիրքեր էր գրավել, Աքեմենյանների օրոք դառնում է տերության պետական պաշտոնական լեզու և որպես այդպիսին լայնածավալ տարածում գտնում։ Արամեական արձանագրությունները վկայված են Հնդկաստանից մինչև Փոքր Ասիա, Եգիպտոսից մինչև Հայաստան և Անդրկովկաս, ընդգրկելով Իրանը, Միջագետքը և Ասորիքը։ Ամբողջ այդ տարածքի համար արամերենը եղել է lingua franca, որից օգտվել են արամերենի հետ ոչ մի կապ չունեցող ժողովուրդներ ու ցեղեր։ Նույնը կարելի է ասել հունարենի մասին, որը Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքներից հետո Առաջավոր Ասիայում փոխարինելու եկավ արամերենին (թեև ոչ լրիվ)։ Ծայր արևմուտքից՝ Իսպանիայից ու Գալլիայից մինչև Ասիայի խորքերը, իր մեջ առնելով մերձսևծովյան տարածքը և Աֆրիկայի հյուսիսը, հունարենը կատարել է իր մշակութային առաքելությունը։

Արամերենի ու հունարենի բնույթը, նրանց կատարած դերը Առաջավոր Ասիայում համեմատության ոչ մի եզր չի գտնում այսպես կոչված նորխուրրիական, ըստ էության ուրարտական, արձանագրություններին վերագրված յուրահատկությունների հետ։ Ինչպես էլ անվանելու լինենք այդ արձանագրությունների լեզուն՝ ուրարտերեն, բիայներեն թե նորխուրրիերեն, այն անպայման սպասարկել է ոչ միայն պետական պաշտոնական ոլորտները, այլ նաև նույն լեզվով խոսող մարդկանց բավականին ստվար զանգվածներ։ Այսպիսով պարզ է, որ արձանագրությունները արտահայտում են ուրարտական պետության մեջ իշխող էթնիկական տարրի՝ ուրարտացիների կամ բիայնիլցիների լեզուն։

Այժմ մի քանի խոսք ուրարտացիների և Հայկական լեռնաշխարհը բնակեցնող այլ ցեղերի մասին ետուրարտական ժամանակաշրջանում։ Սկզբնաղբյուրների սակավաթիվ, բայց հույժ կարևոր տվյալները թույլ են տալիս ուրվագծել այդ ցեղերի՝ հայերին անդառնալիորեն ձուլվելու պատկերը։ Վերարտադրելով աքեմենյան տերության սատրապությունների ցուցակը, հույն պատմիչ Հերոդոտոսը նշում է, որ Հայաստանի հյուսիս-արևելյան, արևելյան և հարավ-արևելյան հատվածներն ընդգրկող 18-րդ սատրապությունը բնակեց-

ված էր սասպերներով, ալարոդներով ու մատիեններով։ Մ. թ. ա. VI—V դդ. վերաբերող այս իրավիճակը հետագա դարերում աստիճանաբար փոխվում է։ Հայկական էթնիկական զանգվածների ճնշման տակ սասպերները տրոհվում են երկու մասի՝ մ. թ. ա. V—IV դդ. սահմանագլխին Քսենոփոնի կողմից Հայաստանի հյուսիսում հիշատակված հեսպերիտների և Կուր գետի այն կողմի արևելավրացական ցեղերի՝ իբերների հիմքում ընկած սասպերների միջև։ Հեսպերիտները, ընդգրկվելով «Արևմտյան Հայաստան» վարչական միավորի կազմի մեջ, աստիճանաբար ձուլվում են՝ թողնելով իրենց անունը Հայաստանի Սպեր գավառի մեջ, որի վաղագույն՝ մ. թ. ա. IV դարի երկրորդ կեսին վերաբերող հիշատակությանը կարելի է հանդիպել Ստրաբոնի մոտ։ Նույն ճակատագրին արժանացան սատրապության հարավը զբաղեցնող մատիենների խուրրիական ցեղերը՝ իրենց անունը թողնելով Ուրմիո լճի Մանտիանա անվան մեջ։

Ինչ վերաբերում է ուրարտացի ալարոդներին[13], որոնք գրավում էին սատրապության միջին մասը (պետք է կարծել՝ Արարատյան դաշտը և նրա շրջապատը), ապա մ. թ. ա. IV դարում, Երվանդյան երկրորդ թագավորության կազմավորման օրերին, նրանք, արդեն վաղուց բռնած լինելով հայացման ուղին, այդ թագավորության օրգանական մասը կազմեցին։

Ուրարտացիների հայացման մի դրվագ անուղղակիորեն մեզ են հասցրել Բեհիստունյան արձանագրությունները։ Այդ արձանագրությունների տվյալների համաձայն Դարեհի դեմ ապստամբություն բարձրացրած Բաբելոնիայում իրեն բաբելոնական գահի թեկնածու էր հայտարարել արմեն Արախան, Հալդիտայի որդին։ Երկու (հոր և որդու) անունների ստուգաբանությունը օգնում է ճիշտ հասկանալ հին Հայաստանի էթնիկական պատմության կարևոր մի դրվագ՝ կապված Հայաստանում ուրարտական տարրի ճակատագրի հետ։ Այսօր ոչ ոքի մոտ կասկած չի հարուցում այն հարցը, որ արմեն Արախայի հոր անունը ուրարտական է («Խալդին մեծ է, Խալդի-տեալ»)[14], դեռ ավելին, ինքը Հալդիտան ուրարտացի է, Ուրարտական տերության անկումը տեսած և Հայկական թագավորության օրերում իր գոյությունը պահպանած ուրատական տոհմից։ Սակայն էթնիկական պրոցեսները, որոնք անկասելիորեն աշխատում էին Հայկական լեռնաշխարհի էթնիկական ղեկավար տարրի՝ հայ-արմենների օգտին, այժմ իրենց դրոշմը դրեցին ուրատական այդ տոհմի ճակատագրի վրա։ Արդյունքը՝ Հալդիտա ուրարտացու արմեն որդին։ Ճիշտ են այն ուսումնասիրողները, որոնք ընդգծում են էթնիկական պատմության այս դրվագը ակամա որսած Բեհիստունյան արձանագրության նշանակությունը[15]։ Հալդիտայի որդին հայ է ոչ միայն արձանագրության տվյալների համաձայն, այլ նաև իր անվամբ, որի հիմքը՝ Ար-ը, հայկական-փոքրասիական է[16]։ Քանի որ Արախան գործում էր Բաբելոնիայում, ապա նրա հայկական անունը կարող էր որոշ չափով հարմարվել նաև տեղի անունների ձևերին։

---

13 Ուրարտու—ալարոդներ անցումը բացատրվում է բաբելերենի առանձնահատկություններով, որոնց համաձայն ասսուրերենի rt-ն բաբելերենում դառնում է շտ, որով ասսուրերեն Ուրարտուն դառնում է Ուրաշտու և կարդացվում է Ուրալտ կամ Օրալտ, որը բաղաձայնների դրափոխման ենթարկվելու եղանակով (Ալարոտ) դառնում է ալարոդ ցեղանվան հիմքը։ Այս փոփոխությունները անշուշտ տեղի են ունեցել ոչ թե տեղական հողի վրա, այլ ուրարտերենին օտար մի միջավայրում (J. Markwart. Südarmenien..., S. 222, Anm. 3. Գր. Ղափանցյան. նշվ. աշխ., էջ 134, 226։ Г. А. Меликишвили. Наири—Урарту, с. 21—22; И. М. Дьяконов. Языки древней Передней Азии, с. 316, прим. 7).

14 И. М. Дьяконов. Предыстория армянского народа. Ереван, 1968, с. 235, прим. 116; M. Mayrhofer. Die altiranischen Namen (Iranisches Personennamenbuch, II). Wien, 1979, S, 14—15, 21—22.

15 Գ. Խ. Սարգսյան. Հիմնազուրկ տեսություններ Ուրարտուի մասին.—«Պատմա-բանասիրական հանդես», 1970, № 3, էջ 61։

16 Ն. Ադոնց. նշվ. աշխ., էջ 373—376։

*Այսպիսով, լրիվ անսպասելիորեն արձանագրությունը մեզ է փոխանցել մ. թ. ա. 521 թ. թվագրվող այն պահը, երբ ուրարտացի—հայ անցումը, մի ընտանիքի կամ տոհմի օրինակով, իրականություն էր դարձել։*

*Հայկական թագավորության և ապա սատրապության պայմաններում ուրարտացիների գոյության և նրանց դերի մասին անուղղակիորեն կարող են վկայել հնագիտական նյութերը։ Ուրարտական և հայկական ժամանակաշրջանների մետաղագործության որոշ ճյուղերի և խեցեգործության մեջ երբեմն նկատվող ապշեցուցիչ նմանությունը հնարավոր է բացատրել նաև այն հանգամանքով, որ ուրարտական մետաղագործական և խեցեգործական արհեստանոցները չեն դադարեցրել իրենց գործունեությունը հայկական ժամանակաշրջանում, գոնե սկզբում, և որ այդ արհեստանոցներում աշխատող վարպետները էթնիկապես ուրարտացիներ էին, որոնք շարունակում էին արտադրել նույն մետաղագործական ու խեցեգործական տեսականին՝ հարմարեցնելով այն նոր ժամանակների պահանջներին*[17]*։ Սակայն արհեստավորական այս տարրն էլ, որի գոյության մասին կարող են վկայել վաղ հայկական ժամանակաշրջանի նյութական արտադրանքի նմուշները, նույն ճակատագրին արժանացավ, ինչ որ սոցիալական մյուս խմբերը՝ նրանք բոլորը հայացան։*

*Նման հականե հանվանե հիշատակված օրինակներ ևս հայտնի են։ Մեկ օրինակը կապված է խալդայ-խալիբների հետ։ Հայաստանի հյուսիս-արևմտյան լեռներում հանդիպող այս ցեղախմբի պատմությունը՝ հատկապես հայկական քաղաքական կազմավորումների և, վերջին հաշվով, հայկական էթնիկական տարրի հետ նրա ունեցած փոխհարաբերությունների տեսանկյունից, բավականին լավ ուրվագծվում է։ Արևմտաքարթվելական այս ռազմատենչ ցեղի պատմությունը սկիզբ է առնում դեռևս ուրարտական ժամանակաշրջանում։ Ռուսա II-ը նվաճում է խալդայ-խալիբների Խալիտու երկիրը։*

*Ուրարտուի անկման օրերին հավանաբար անկախանալով, նրանք նորից են հպատակեցվում, այս անգամ մ. թ. ա. VI դարի հայկական թագավորության կողմից։ Հպատակեցման այդ ակտը Քսենոփոն պատմիչը վերագրում է Կյուրոսին, բայց շատ ավելի հավանական է, որ դա Երվանդ Սակավակյաց և Տիգրան Երվանդյան թագավորների գործն է, մանավանդ, որ հնագույն մի վկայության համաձայն, որը պատկանում է հույն պատմիչ Հեկատայոս Միլետացուն, հայերը խալիբների անմիջական հարևաններն էին հարավից։ Հաջորդ տեղեկությունը վերաբերում է սատրապական ժամանակաշրջանին, որից երևում է, որ խալիբ-խալդայները ինչ-որ կախման մեջ էին «Արևմտյան Հայաստան» վարչական միավորից։ Հույն աշխարհագիր Ստրաբոնի մ. թ. ա. II դարի սկզբին վերաբերող մի վկայությունից երևում է, որ խալիբները, կամ գոնե նրանց մի մասը, Փոքր Հայքի կազմի մեջ էին մտնում։ Քաղաքական հպատակեցման այս քայլերը ուղեկցվում էին էթնիկական ձուլման պրոցեսով։ Դրա փայլուն ապացույցը* արմենոխալիբներ *անվանումն է, որ նրանց իսպառ կլանման նախօրեին կիրառում է մ. թ. I դարի հեղինակ Պլինիոս Ավագը* (Naturalis Historia, VI, 11—12, 29)*։ Խոսելով այս ցեղերի մասին, պատմիչը անուղղակիորեն ընդգծում է հայ-խալիբական քաղաքական և էթնիկական փոխհարաբերությունների այս կարևոր դրվագը։ Վերջնական եզրափակիչ քայլը համընկավ խալդայ-խալիբների կամ նրանց մի ստվար մասի լիակատար ձուլման իրողության հետ, որից հետո Հայաստանի հյուսիս-արևմտյան մասում պահպանվեցին միայն այդ ցեղախմբերի երբեմնի գոյությունը հավաստող տեղանունները։*

*Մյուս օրինակը կապված է մարդերի իրանական ցեղի նույնատիպ ճակատագրի հետ։ Հայաստանի հարավում դեռևս մ. թ. ա. V դարի վերջին վկայված այս ցեղը (Քսենոփոն) շարունակում է իր գոյությունը պահպանել և հետագա դարերում (Ստրաբոն, Պլուտարքոս, Տակիտոս), բայց ահա նույն Պլի-*

---

[17] *Գ. Ա. Տիրացյան. Ուրարտու և Հայաստան (նյութական մշակույթի ժառանգորդության հարցի շուրջը).—«Պատմա-բանասիրական հանդես», 1978, № 1, էջ 58—59։*

*Նիոս Ավագի մոտ վկայված մի աղճատված ցեղանուն՝ Ն. Ադոնցի կողմից փայլուն կերպով վերականգնված որպես* armenomarder, *որը համոզեցուցիչ ուղենիշ է մարդերի հայացման ճանապարհին*[18]*։*

*Հին հայկական պետությունը ժառանգեց ոչ միայն Ուրարտուի տարածքը, այլ նաև քաղաքական այն հիմնական խնդիրները, որոնք կապված էին նրա գոյության հետ Հայկական լեռնաշխարհում։ Դրանցից երկուսն ամենակարևորներն էին. մեկը լեռնաշխարհի միավորումն էր իր բնական սահմաններում, մյուսը՝ հառավից եկող օտարերկրյա սպառնալիքին դիմագրավելը։ Ուրարտուի պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նա հաջող ձևով կատարեց այդ խնդիրները։ Հասնելով արևմուտքում Եփրատ, արևելքում Կուր գետերին, հյուսիսում Պոնտական, հարավում Մասիոսի ու Կորդվաց լեռներին, Ուրարտուն փաստորեն առաջինն իրագործեց Հայկական լեռնաշխարհի միավորումը, համառ պայքարում կատարեց նաև իր մյուս առաքելությունը՝ փակելով Հայկական լեռնաշխարհի ճանապարհը հարավից եկող սեմական վտանգի առաջ*[19]*։*

*Երվանդունիների հայկական պետությունը, Ուրարտուի լիիրավ ժառանգը դառնալով, պատմական արդեն նոր իրավիճակում կանգնեց նույն խնդիրների առաջ։ Մ. թ. ա. VI դարի սկզբին Ուրարտուին փոխարինելու եկած հայկական պետությունը, ինչպես երևում է քիչ ավելի ուշ, աքեմենյան ժամանակաշրջանի տվյալներից, դարձավ փաստորեն Ուրարտուի իրավական ժառանգը, ամփոփվելով նրա քաղաքական սահմաններում և նրանցից էլ դուրս*[20]*։ Միևնույն ժամանակ նա փորձեց դիմադրել հարավ-արևելքից ու հարավից եկող նոր իրանական վտանգին։ Եթե չլիներ այդ փորձը, հայ ժողովուրդը իսպառ կուլ կգնար իրանականությանը։*

*Ժառանգականությունը իրեն դրսևորեց ոչ միայն քաղաքական այս հիմնական, այլև մասնավոր խնդիրներում։ Բավական է հիշել Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելյան շրջանների, այդ թվում և Արարատյան դաշտի յուրացման պատմությունը նախ ուրարտական պետության և ապա հայկական պետության կողմից, որպեսզի նշվի նրանց զարմանալի նմանությունը, կամ երկու պետությունների համանման վերաբերմունքը հյուսիս-արևմուտքում ապրող խալդայների ցեղախմբի նկատմամբ՝ կապված խալդայների Խալիտու-Խալդիք երկիրը նվաճելու ուղղությամբ Ռուսա II-ի և Երվանդ Սակավակյացի (համապատասխանաբար մ. թ. ա. VII և VI դդ.) կատարած փորձերի հետ։*

*Միշտ չէ, որ տեղագրական տվյալների փոխանցումը կամ հարատևությունը ազգակցական որևէ կապի մասին վկայող փաստ է, բայց ուրարտահայկական առնչությունները տեղանունների հարցում այնքան առատ են ու պերճախոս, որ մատնանշում են Հայաստանը Ուրարտուից օրգանապես բխելու մասին*[21]*։*

*Ժառանգականության երևույթը կարելի է տեսնել նաև մի շարք այլ բնագավառներում։*

*Հ. Աճառյանի աշխատանքներից, հատկապես «Արմատական բառարանի» հրատարակումից հետո պարզ դարձավ, որ հայերենի մեջ առկա է լեզվական մի ստվար շերտ, որը չի ստուգաբանվում։ Լեզվաբանների կարծիքով այն ամենայն հավանականությամբ Հայկական լեռնաշխարհի տեղական, նախ և առաջ խուրրի-ուրարտական ցեղախմբերի լեզուների ներդրումն է հայերենի մեջ։ Այս ներդրումը բացահայտելու ուղղությամբ կատարված է և շարունակվում է կատարվել որոշակի դրական աշխատանք և թեպետ խուրրիերենի և ուրարտերե-*

[18] Н. Г. Адонц. Армения в эпоху Юстиниана. С.-Петербург, 1908, с. 418.

[19] *Ն. Ադոնց. Հայաստանի պատմություն, էջ 284։*

[20] *Գ. Ա. Տիրացյան. Երվանդյան Հայաստանի տարածքը (մ. թ. ա. VI դ.).—«Պատմաբանասիրական հանդես», 1980, N 4, էջ 84 և հտ.։*

[21] Н. В. Арутюнян. Топонимика Урарту. Ереван, 1985.

նի մեզ հայտնի բառապաշարը դեռ սահմանափակ է, այդ աշխատանքի արդյունքները հուսադրող են։ Դրանք ամփոփված են Գ. Ղափանցյանի հայոց լեզվի պատմությանը նվիրված գրքի «Հայերենի աղերսը խուրրի և ուրարտական լեզուների հետ» գլխում, բայց վերջին տարիներին այդ աղերսների թիվը աճել է։ Կարելի է խոսել հայերենի բազմաթիվ հասարակ և հատուկ անունների, բայական ձևերի, քերականական տարրերի մասին, որոնց խուռրիական և ուրարտական ծագումը կասկածից վեր է։ Նույնը կարելի է ասել հայերենի հնչյունաբանական առանձնահատկությունների մասին, որոնք զգալի չափով փոփոխվել են Հայկական լեռնաշխարհի տեղական լեզուների և առաջին հերթին՝ ուրարտերենի հնչյունային համակարգի ազդեցության տակ։

Խուրրի-ուրարտական, դեռևս մինչև վերջ չբացահայտված, ենթաշերտի առկայությունը հայերենի մեջ հայոց լեզվի և հայ ժողովրդի կազմավորման գործում տեղական ցեղերի մասնակցության և ուրարտա-հայկական ու խուրրի-հայկական ժառանգական սերտ կապերի խոսուն վկայությունն է։

Ուրարտական և հին հայկական հուշարձանների եռանդուն պեղումները այժմ թույլ են տալիս առաջ քաշել նաև նյութական մշակույթի և հարակից երևույթների հաջորդականության հարցը։ Այն դարձել է հատուկ ուսումնասիրման առարկա, որտեղ բազմաթիվ բնագավառների օրինակով (քաղաքաշինություն, ճարտարապետություն, շինարարական տեխնիկա, խեցեգործություն, մետաղագործություն, թաղման ձևեր և այլն) հնարավոր է բացահայտել ուրարտական ներդրումը հին հայկական մշակույթի ձևավորման գործում[22]։ Այս տվյալների լույսի տակ կարելի է խոսել ոչ թե ուրարտական մշակույթի ազդեցության մասին հին հայկականի վրա, այլ հայկական մշակույթի մեջ ուրարտական մշակութային երևույթների օրգանապես ձուլվելու մասին։

Գալով կրոնի և հավատալիքների հարցերին, դուցե և պետք էր համաձայնել Գ. Ղափանցյանի հետ այն բանում, որ ուրարտական պանթեոնը, շուրջ 60 աստվածությունների անուններով, ոչ մի ազդեցություն չի թողել հայկական պանթեոնի վրա, եթե այս ուղղությամբ տարվող աշխատանքները մասամբ հակառակը չապացուցեին։ Ուշադրություն դարձնենք հենց Գ. Ղափանցյանի աշխատություններում հանդիպող ուրարտա-հայկական կրոնական առնչություններ հավաստող տվյալների վրա։

Այսպես՝ Երեմիա Մեղրեցու բառարանում, որը Գ. Ղափանցյանի կարծիքով նաև ուրարտական բառեր է պարունակում, հանդիպում է մեղարդ բառը, որը թարգմանվում է լուսին։ Նրա կարծիքով մեղարդը ծագում է սեղարդ ձևից, երկաթագիր Ս և Մ տառերի շփոթության հետևանքով։ Մյուս կողմից, Մհերի դռան արձանագրությունում հանդիպում է խուրրի-ուրարտական աշխարհում տարածում գտած Սելարդի կամ Շելարդի աստվածությունը լուսին, աստղ նշանակությամբ, որով նա համահնչյուն է հայկական Սեղարդին, որի ուրարտական ծագումը անառարկելի է դառնում[23]։

Մի ուրիշ խիստ հետաքրքրական ուրարտա-հայկական պաշտամունքային աղերսի վրա, փայլուն կռահմամբ, մատնացույց է արել Ի. Դյակոնովը[24]։ Ըստ նրա կարծիքի Խալդի գլխավոր աստծու պաշտամունքը Ուրարտական պետության անկումից հետո չի անհետացել, այլ ենթարկվել է սինկրետիզացիայի, համադրման։ «Խալդիի դուռ» պաշտամունքային արտահայտությունը, որը հանդիպում է Մենուա թագավորի Վանա ժայռի Մհերի դռան արձանագրությունում, հայերի գիտակցության մեջ վերածվեց «Մհերի դուռ» հասկացության։ Սա նշանակում է, որ ետուրարտական, հայկական ժամանակաշրջանում

22 Գ. Ա. Տիրացյան. Ուրարտու և Հայաստան.—«Պատմա-բանասիրական հանդես», 1978, № 1։

23 Գ. Ա. Ղափանցյան. Հայոց լեզվի պատմություն (Հին շրջան). Երևան, 1961, էջ 140։ Այս փաստի վրա մեր ուշադրությունը հրավիրեց Ս. Գ. Հմայակյանը։

24 И. М. Дьяконов. К вопросу о символе Халди.—Древний Восток, IV. Ереван, 1983, с. 191—192.

Խալդին նույնացվել է Միթրա-Միհր աստծու հետ և նրանց պաշտամունքները միաձուլվել են։ Միհրը իր նախորդ Խալդիի նման տոն օրերին դուրս էր գալիս ժայռի մեջ փորված սրբազան դռնից։

Վերջապես, ինչը կարող է ավելի լավ պատկերացում տալ ուրարտահայկական պաշտամունքային առնչությունների մասին, քան այն հանգամանքը, որ հայերեն աստված բառը մուտք է գործել ուրարտերենից կամ ուրարտերենի միջնորդությամբ։ Վերընթերցելով Արգիշտի I-ի խորխորյան արձանագրության՝ դեպի Էրիախի երկիրը կատարած արշավանքին նվիրված հատվածը, Գ. Մելիքիշվիլին այնտեղ կարդաց ատխուծի անունը՝ կուռք կամ աստված նշանակությամբ[25]։

Մի քանի խոսք մարդաբանական աղբյուրի մասին։ Դժբախտաբար մարդաբանական ուրարտական նյութը այնքան էլ հարուստ չէ, որպեսզի այն համեմատության մեջ դրվի հայերի մարդաբանական տիպի հետ, բայց եղածը, ինչպես նաև արվեստի գործերում և հատկապես Ասորեստանի Սալմանասար III-ի այսպես կոչված Բալավաթյան դռների բարձրաքանդակների վրա պատկերված ուրարտական էթնիկական տիպը անկասկած հարում է առաջավորասիական հնագույն ժողովուրդների կամ ցեղերի մարդաբանական կերպարին և այս տեսակետից կարող է նախորդը համարվել արմենոիդ տիպի, որին պատկանում են ժամանակակից հայերը։ Մի կողմից խուրրիների և ուրարտացիների, մյուս կողմից հայերի մարդաբանական և գանգաբանական զուգահեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս և ցույց կտան, որ հայերն իրենց մարդաբանական հիմնական հատկանիշները ժառանգել են ուրարտացիներից և խուրրիներից։

Այժմ մի քանի խոսք Ուրարտու—Հայաստան քաղաքական անցման հետ կապված էթնիկական փոփոխությունների մասին, որոնց հատկապես ականատես եղավ Հայկական լեռնաշխարհը մ. թ. ա. VII—VI դդ. սահմանագլխին։ Սկզբնաղբյուրների՝ խեթական, ասորեստանյան, ուրարտական, հունական և հայկական, տվյալների համեմատական ուսումնասիրությունից կարելի է գալ այն եզրակացության, որ Հայաստանի արևմտյան շրջանները՝ Փոքր և Բարձր Հայքը, Ծոփքը, Աղձնիքը, հնուց ի վեր բնակեցված են եղել ոչ միայն խուրրիալեզու բնակչությամբ, այլ նաև հայերի հնդեվրոպական նախնիներով՝ հայասներով և արմեններով։ Ճիշտ է, Հայկական լեռնաշխարհի այս մեծ հատվածը հիմնականում մտել է ուրարտական պետության կազմի մեջ, ինչպես օրինակ **Բարձր Հայքը, Ծոփքը, ժամանակ առ ժամանակ** Աղձնիքը, բայց էթնիկապես այն աստիճանաբար յուրացվեց հնդեվրոպական հայ-արմենների կողմից։ Յուրացման այս պրոցեսը իր քաղաքական արտահայտությունը գտավ սկզբում Փոքր և Մեծ Հայքում՝ Հայասա-Ազզի իշխանությունում, իսկ ապա Աղձնիքում՝ Արմե-Շուպրիա իշխանությունում։

Հայկական լեռնաշխարհում մ. թ. ա. VI դարի սկզբին հայ-արմենական ցեղերի հանդես գալու մասին ակադ. Հ. Մանանդյանի աշխատություններում տեղ գտած տեսակետը արմատապես վերանայվեց Գր. Ղափանցյանի և Բ. Պիոտրովսկու հիմնարար աշխատություններում, որոնց համաձայն մ. թ. ա. XIV դարից Հայաստանի հյուսիս-արևմուտքում վկայված է Հայասա-Ազզին[26], իսկ մ. թ. ա. VIII դարից Հայաստանի հարավ-արևմուտքում՝ Արմեն[27]։ Խոշոր հեղաշրջում ապրած հայերի հնդեվրոպական նախնիների այս պրոբլեմում կարևոր նոր առաջընթաց կատարվեց Ս. Երեմյանի և Գ. Ջահուկյանի ուսումնասիրություններում, որոնցում մի կողմից Արմեի պատմությունը հնացվեց

---

25 Г. А. Меликишвили. К чтению одного места в летописи урартского царя Аргишти I.—Переднеазиатский сборник. М., 1979, с. 174.

26 Гр. Капанцян. Хайаса—колыбель армян. Ереван. 1948.

27 Բ. Բ. Պիոտրովսկի. Հայ ժողովրդի ծագման հարցի շուրջը.—ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1945, № 6։

շուրջ չորս դարով և հասցվեց մինչև մ. թ. ա. XII դարը[28] և մյուս կողմից հիմնավորվեց Հայասա-Ազզիի հնդեվրոպական բնույթը[29]։

Հայ-արմենների և նրանց ազգակից հնդեվրոպացի ցեղերի առկայությունը և ներթափանցումը բուն Ուրարտուում կարող է սկսված լինել շատ վաղ, առնվազն հայ-արմենական իշխանությունների հիմնադրման օրվանից։ Հայկական լեռնաշխարհի արևմուտքից, տարբեր ժամանակներում, տարբեր ուղիներով այդ ցեղերը շարժվել են դեպի արևելք և հաստատվել երկրի տարբեր մասերում։

Ամենայն հավանականությամբ այս շարժումների հիմնական ժամանակաշրջանները համընկնում են ուրարտական պետության հիմնադրմանը նախորդող հարյուրամյակների և նույն այդ պետության գոյության վերջին հարյուրամյակի՝ հատկապես նրա վերջի հետ։

Սկզբնաղբյուրներում (հայկական, ուրարտական, ասորեստանյան, անտիկ) պահպանված տեղագրական, ցեղագրական տվյալներր, անձնանունները թույլ են տալիս կազմել հնդեվրոպական տարրի տեղաբաշխման մոտավոր պատկերը Հայկական լեռնաշխարհում։ Հայաստանի հարավային սահմանները զբաղեցված էին թրակա-փռյուգիական և արմենական ցեղերով։ Արևմտյան և Արևելյան Տիգրիսների մոտակայքում հիշատակվող Իշպիլիբրիա քաղաքը, մուշկերը, մոկսիանները և գորգիացիները այս կամ այն կերպ առնչվում են թրակափռյուգիական աշխարհի հետ։ Վաղուց հայտնի է նաև, որ Արմե-Շուպրիայից՝ Աղձնիքի տարածքից արմենական ցեղերը առաջ խաղացին այդ սահմանների երկարությամբ դեպի արևելք և հարավ-արևելք՝ հասնելով մինչև բուն ասորեստանյան տերիտորիան (Սուբարու)։ Վանա լճի ավազանի տեղագրական տվյալները ճիշտ է, որոշ վերապահությամբ, նույնպես կարող են վկայել հայ-արմենական և փռյուգիական էթնիկական առկայության մասին այստեղ (օրինակ՝ Արգիշտի Ռուսա II-ի արձանագրության տեղեկությունները Վանա լճի հյուսիս-արևմուտքում Խաթե, Մուշկի և Խալիտու երկրներից բնակչության (այդ թվում պետք է կարծել և հայ-փռյուգիական) վերաբնակեցման մասին, Արմարիլի (?), Այադու (?), Հայոց ձոր, Նարեկ տեղանունները)։

Կենտրոնական Հայաստանում Մուշը կապվում է փռյուգիացի մուշկերի հետ, Մուշից արևմուտք հանդիպող Տիտիա անձնանունը՝ փոքրասիական, անգամ թրակա-փռյուգիական աշխարհի հետ, իսկ նրանից արևելք, Բագրևանդի Բագավանում վկայված Մաժան աստվածությունը՝ Հայասա-խեթական աշխարհի հետ։

Հյուսիս-արևելյան Հայաստանում հանդիպում ենք տեղանունների, անձնանունների ու ցեղանունների (Դիուծինի, ատիուծի, Տրիարե (Թռեղք), Ուդուրի-էթիունի և այլն), որոնք մեծ մասամբ առնչվում են թրակափռյուգիական իրականության հետ։

Նման կոնտեքստում հավանական է դառնում հյուսիսում, Հայաստանի և Վրաստանի սահմանում հանդիպող, վրաց ժողովրդի կազմավորման գործում մեծ դեր խաղացած մեսխերի փռյուգիական (մուշկական) հնդեվրոպական ծագումը։ Ուրարտական տերության արևմտյան Խաթե և Ծուպանի մարզերից Արարատյան դաշտ տեղափոխված բնակչության թվում կարող էին լինել նաև հայ-արմեններ։

Վերջապես, Հայաստանի արևելքում վկայված, նույն թրակիական տրերների հետ առնչվող Տերիանի տեղանունը և Բալա խեթական տեղանվան հիմքի վրա կազմված բազմաթիվ տեղանունները ամբողջացնում են Հայկական լեռնաշխարհում հայկական հնդեվրոպական իշխանությունների սահմաններից

28 Ս. Տ. Երեմյան. Հայերի ցեղային միությունը Արմե-Շուպրիա երկրում.—«Պատմա-բանասիրական հանդես», 1958, № 3։

29 Գ. Բ. Ջահուկյան. Հայասայի լեզվի հնդեվրոպական ծագման վարկածր.—«Պատմա-բանասիրական հանդես», 1976, № 1։

դուրս հանդիպող հայ-արմենական և նրանց ցեղակից խմբերի տարածման ոչ լրիվ պատկերը[30]։

Հնդեվրոպական ցեղերի երևան գալը Հայկական լեռնաշխարհում չի կապվում անպայման սկզբնաղբյուրներում հայկական հնդեվրոպական իշխանությունների առաջին հիշատակությունների հետ։ Եթե, օրինակ, Հայասա-Ազզի հնդեվրոպական միավորը հիշատակվում է մ. թ. ա. XIV դարից սկսած, այդ դեռ չի նշանակում, որ նրա գոյության սկիզբը չէր կարող լինել ավելի վաղ։ Ամեն դեպքում այն ազգակցական կապը, որ հաստատվել է խեթերենի և հայասերենի միջև, որպես հին անատոլիական լեզուների (Գ. Բ. Ջահուկյան), թույլ է տալիս ենթադրելու, որ հայասացիները երևան են եկել խեթերի հետ միաժամանակ, առնվազն մ. թ. ա. II հազարամյակի սկզբին, գուցե անգամ III հազարամյակի վերջին։

Հնագիտական կարգի որոշ դիտողություններ նույնպես թույլ են տալիս վաղ ժամանակով թվագրել հնդեվրոպական տարրի երևան գալը Հայկական լեռնաշխարհում, մ. թ. ա. III—II հազարամյակների սահմանագծում, եթե, իհարկե, վերջնականապես ապացուցվի, որ այդ ժամանակաշրջանում կամ մի քիչ էլ վաղ Հայաստանի հնագույն մշակույթում հանդես եկող գունազարդ խեցեղենի էթնիկական կրողները Հայկական լեռնաշխարհ մուտք գործած հնդեվրոպացիներն են։

Բայց սա դեռ ամենը չէ։

Հայտնի է, որ վերջերս առաջ քաշված պատմալեզվագիտական նորագույն տեսության համաձայն Հայկական լեռնաշխարհը և նրա հարակից շրջանները համարվում են հնդեվրոպական ժողովուրդների նախահայրենիքը։ Նման մոտեցման դեպքում հայերի հնդեվրոպական նախնիները դեռևս հնագույն ժամանակաշրջանում ապրում էին Հայկական լեռնաշխարհում կամ նրա հարևան տարածքում։ Նման տեսությունը անչափ հետաքրքիր լինելով հանդերձ, պահանջում է լուրջ և բազմակողմանի քննարկում նախ և առաջ հնդեվրոպաբանների շրջանում, մանավանդ, որ գիտական առաջին արձագանքները այդ տեսության մասին խիստ քննադատական են։

Սրանք հարցեր են, որոնք այս հոդվածի նպատակներից դուրս են մնում։

Արմե-Շուպրիայի պատմությունը մ. թ. ա. VIII—VII դդ., դա Ասորեստանի և Ուրարտուի ոտնձգություններից պաշտպանվելու պատմությունն է։ Հինարևելյան տերությունների վերահաս կործանման նախօրեին Արմե-Շուպրիան ակտիվացրեց իր քաղաքականությունը՝ հարելով Առաջավոր Ասիայում հանդես եկած նոր ուժերին ի դեմս Մարաստանի և Նոր բաբելոնական տերության։ Եթե ճիշտ է Մովսես Խորենացու հաղորդածը Նինվեի պաշարմանը և անկմանը հայերի մասնակցության մասին, ապա հայ-մարա-նորբաբելոնական դաշինքը մ. թ. ա. 612 թ. նախօրեին՝ իրողություն էր։ Ասորեստանի անկումից հետո դաշինքը ստացավ հակաուրարտական բնույթ։ Դեպի Ուրարտուի խորքերը կա-

---

[30] Гр. Капанцян. Хайаса—колыбель армян, с. 128—131, 154—158, 248—251; Г. А. Меликишвили. К истории древней Грузии. Тбилиси, 1959, с. 108; И. М. Дьяконов. Предыстория армянского народа, с. 221; Ս. Տ. Երեմյան. Կիմերական և սկյութական ցեղերի արշավանքները և Ուրարտուի ու Ասորեստանի պայքարը քոչվորների դեմ.—«Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 2, էջ 90—93, 109։ Նույնի՝ Հայկական առաջին պետական կազմավորումները.—«Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 3, էջ 92, 109—110, 116։ Ս. Դ. Պետրոսյան. Մերձսևանյան ցեղերի միությունը Հայկական լեռնաշխարհի հյուսիս-արևելքում.—«Պատմա-բանասիրական հանդես», 1976, № 1, էջ 187 և հտ.։ Նույնի՝ Թրակա-կիմերական ցեղերի միությունները Հայկական լեռնաշխարհում.—«Պատմա-բանասիրական հանդես», 1977, № 1, էջ 207 և հտ.։ Նույնի՝ Հին թրակյան էթնիկական տարրը հնագույն Վանանդում.—ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր հաս. գիտ.», 1977, № 8, էջ 32 և հտ.։ Г. А. Меликишвили. К чтению одного места в летописи урартского царя Аргишти I, с. 174; О. О. Карагезян. Фракийцы на юго-западе Армянского нагорья.—«Պատմա-բանասիրական հանդես», 1981, № 1, էջ 217 և հտ.։

*տարված բաբելոնական և մարական արշավանքները, որ վկայված են նորբաբելոնական արձանագրություններում, վերջնականապես թուլացրին Ուրարտուն՝ գործողության ազատություն տալով հայերին։*

*Ըստ երևույթին մ. թ. ա. 609—608 թթ. և 590—585 թթ. միջև ընկած ժամանակահատվածում (դեպի Ուրարտու կատարված արշավանքների տարեթվերից սկսած մինչև Ուրարտուի վերջնական անկումը) տեղի ունեցան հայ-արմենների առավել ինտենսիվ փորձերը՝ շարժվել դեպի արևելք, դեպի տերության կենտրոնական մարզերը։ Ինչպես արդեն նշվեց, Հայոց ձորը Տուշպա-Վանի մոտ կարող է վկայել հայերի ներթափանցման մասին դեռևս Ուրարտական պետության գոյության պայմաններում։ Դժբախտաբար իր հաստատումը չգտավ Ուրարտուի գոյության վերջին տասնամյակներում ուրարտական գահի վրա բարձրացած ծագումով հայ թագավորների մասին հետաքրքիր վարկածը։*

*Մ. թ. ա. 590 թ. Ուրարտուին փոխարինելու եկած հայկական թագավորությունը նրա քաղաքական ժառանգը հանդիսացավ Հայկական լեռնաշխարհում, որը ամբողջությամբ ընդգրկվեց նրա կազմի մեջ։*

## НЕИНДОЕВРОПЕЙСКИЕ ПРЕДКИ АРМЯН ХУРРИ-УРАРТЫ И ПРОБЛЕМА УРАРТУ—АРМЕНИЯ

*Г. А. ТИРАЦЯН*

**Резюме**

За последние годы, главным образом в неакадемической печати, снова ставится под сомнение не только название *Урарту*, но и существование страны и государства под этим именем. Между тем известно, что слово *Урарту* и его разновидности, встречаются начиная с XIII в. до н. э., и хотя *урарты*—не самоназвание жителей Армянского нагорья, эти обозначения имеют местные корни и уже больше ста лет с успехом применяются в научной литературе.

В языковом, да и в этническом смысле давно доказано, что урартские племена родственны хурритам, их языки образуют отдельную, самостоятельную семью среди языков древней Передней Азии. Поэтому все попытки читать урартские клинописные надписи на другом языке оказались бесперспективными. Изучение лапидарных надписей и надписей на глиняных табличках показывает живой характер их языка, понятного не только верхам, но и вообще грамотной части урартского населения страны. По этой причине всякие сравнения урартского языка с арамейским и греческим по той роли, которую они играли в странах Передней Азии и в самой Армении, лишены научного основания.

Отмеченное нисколько не умаляет того важнейшего значения, которое хурри-урартские племена имели в процессе образования армянского народа. Как показывают факты, хурри-урартский этнический массив целиком растворился в армянской индоевропейской среде, оставив по себе довольно ощутимые следы. Все в большей мере выявляются преемственные связи между Урарту и Арменией. Такие связи удается проследить в политических задачах, которые стояли перед урартским и древнеармянским государствами, в религиозной сфере, в материальной культуре, в области антропологии и топонимики. Хотя хурри-урартский языковой материал выступает как субстратное явление в армянском языке, он указывает на весомые связи, существовавшие и в этой области.